# Ա. ԱՀԱՐՈՆԵԱՆԻ ՅՈԲԵԼԵԱՆԸ

*Այսօր Շաբաթ գիշեր ժամը 8.30ին ՍՈՐՊՈՆԻ ՄԵԾ ԱՄՖԻԹԱՏՐՈՆԻՆ ՄԷՋ*

ԿԸ ՆԱԽԱԳԱՀԷ ԵՒ ԿԸ ԽՕՍԻ՝ Պ. ԺԻՒՍԹԷՆ ԿՈՏԱՌ (M. GUSTIN GODART), ԾԵՐԱԿՈՒՏԱԿԱՆ ԵՒ ՆԱԽԿԻՆ ՆԱԽԱՐԱՐ

*կը խօսին՝ ՎՌԱՄՇԱՊՈՒՀ ԵՊԻՍԿ. ԲԻՊԱՐԵԱՆ, Պ. ՖԷՐՏ. ՀԷՐՕԼՏ* (FERDINAND HÉROLD) *(փոխ-Նախագահ Մարդու եւ Քաղաքացիի Իրաւունքի Ընկերակցութեան), ՖՐՈՑ. ԱԴՈՆՑ, Պ. Պ. Լ. ԲԱՇԱԼԵԱՆ, Ա. ՋԱՄԱԼԵԱՆ (Հ. Յ. Դաշնակցութեան կողմէ), Ա. ՀԱՆԸՄԵԱՆ եւ Վ. ԽԱՐԺԱՆԵԱՆ:*

*Գեղարուեստական բաժնին կը մասնակցին՝ Տիկիններ Ն. ԱԴՈՆՑ, ԶԱՊԷԼ ԱՐԱՄ, ՕՐ. ՀԱՅԿԱՆՈՒՇ ԹՈՐՈՍԵԱՆ, Պ. Ս. ՆԱԻԱՍԱՐԴԵԱՆ (երգերով)*

*ֆրանսական սինէմայի Հանրածանօթ արուեստագէտ* Պ. ՄԱՔՍ ՄԱՔՍՈՒՏԵԱՆ *(կ'արտասանէ Ահարոնեանէ, ֆրանսերէն)*

*Պ. ՏՐԴԱՏ ՆՇԱՆԵԱՆ (արտասանութիւն): կը նուագեն՝ Պ. ԺՕՐԺ ՍԻՆԱՆԵԱՆ (ջութակահար), եւ ԳԱՂԹԱՅԻՆ 21րդ հետեւակազօրաց նուագախումբը*

## ՎԵՐՋԻՆ ԽՕՍՔԸ ՊԻՏԻ ԱՌՆԷ ՅՈԲԵԼԵԱՐԸ

*ԾԱՆՕԹ.— 10 տարեկանէն փոքր տղոց մուտքը արգիլուած է: Անէն անոնք որ մինչեւ 8.45 իրենց տեղերը գրաւած չեն, կը զրկուին ներս մտնելու իրաւունքէն:*

*ՅԱՅՏԱԳՐԷՆ ԴՈՒՐՍ ՈՉ ՈՔԻ ԽՕՍՔ ՊԻՏԻ ՏՐՈՒԻ*

փարիզի եւ շրջանի յոբելինական յանձնախումբը հրապարակ հանած է պրոնզէ շքադրամներ, որոնք շինուած են արձանագործ Պ. Լեւոն Մուրատեանի կողմէ: Գին 10 ֆրանք: Դիմել Պ. Վարդ... Թագւորեանի 53 Fg. du Monmartre.

*ԿԸ ԽՆԴՐՈՒԻ ԿԱՐԳԱՊԱՀ ԸԼԼԱԼ* *ԾԽԵԼԸ ԱՐԳԻԼՈՒԱԾ Է*

*
* *

*Ս Է Ն Թ'Է Թ Ի Է Ն.— Վաղը կիրակի ժամը 2.30ին, Սինէմա Ս. Լուի մէջ: (34 Ռիւ Էմիլ Լիթրէ): Կը նուագէ Պ. Մելքոնեան (Լիոնի երաժշտանոցէն): Մուտքը ազատ է:*

*Ս Է Ն Շ Ա Մ Ո Ն.— Վաղը կիրակի կէսօրէ վերջ ժամը 2ին Սալ տը Քոնֆերանսի շքեղ սրահին մէջ:*

*Տ Է Ս Ի Ն.— Հինգ հայր. Միութեանց, Հ. Յ. Դաշնակցութեան, Ա. Ե. Կ. Խաչի եւ Հ. Մ. Ը. Մ.ի կողմէ: Վաղը կիրակի ժամը 2ին S. L. S. A.ի գործարանին սրահին մէջ: Կը նախագահէ ԱՆԴՐԷԱՍ ՎՐԴ. ՊՕՏՈՒՐԵԱՆ: Գեղարուեստական ճոխ բաժին: Մուտքը ազատ է:*

*մեծ ուժգնութեամբ: Արդէն 3300 հակ բամպակ կրակի տրուած է միայն մէկ վայրի մէջ: Կորուստները անհաշուելի են:*

**** 13 առեւտրական հաստատութիւններ նամակ մը ուղղեցին փոխ արքային, բողոքելով կառավարութեան խստութեանց դէմ: Միւս կողմէ, Անգլիոյ եւ Ֆրանսայի գործարանատէրները նամակներ ստացած են, որոնք խորհուրդ կուտան նոր ապրանք չղրկել Հնդկաստան:*

## ԱՊՐԻԼ 11—24Ի ՍԳԱՏՕՆԸ

*Լ Ի Ո Ն.— Վաղը կիրակի ժամը 2ին Երրորդ Թաղապետարանի սրահին մէջ: Կը խօսի՝ Պ. ԱԲՕ ԱԲՕԵԱՆ: Գեղարուեստական բաժին:*

*Կ Ր Ը Ն Ո Պ Լ Ը.— Վաղը կիրակի, Հայոց եկեղեցին, 15 Rue Bayard, կէս օրէ վերջ ժամը 2.30ին: Կը խօսի Մ. ԵՐԻՑԱՆՑ*

*ՊՈՒԼՎԱՐ - ՕՏՏՕ (Մարսէյլ)— Պուլվար-Օստօի մատրան մէջ վաղը՝ կիրակի (Մայիս 11) առաւօտ ժամը 11ին, նախաձեռնութեամբ հոգաբարձութեան եւ մասնակցութեամբ՝ Տարօն-Տուրուբերանի, Վասպուրականի, Կարճկան գաւառի Հայր. միութիւններու, Սեբաստիոյ Յաղա գիւղի Վերաշէն. Միութեան, Տարօնի Հասան Օվա գիւղի Ուսումնասիրացի եւ Հ. Յ. Դ. ենթակոմիտէի:*

*Կը խօսին՝ Պ. Պ. Ազգին եւ Մ. Մարութեան:*

*Մանրամասնութիւնները տեղւոյն վրայ:*

## Թ Ա Տ Ե Ր Ա Կ Ա Ն — Ն Ե Ր Կ Ա Յ Ա Ց Ո Ւ Մ

*կազմակերպուած Հ. Յ. Դ. Ռոմանի «Անդրանիկ» ենթակոմիտէի կողմէ վաղը կիրակի ժամը 2.30ին Ժան Ժօրէսի սրահին մէջ: Կը ներկայացուի* «ԱՐԻՒՆՈՏ ԴԱՆԱԿԸ»

*Գ ի ն ե ր ը ժ ո ղ ո վ ր դ ա կ ա ն:*

## Ե Ր Ե Կ Ո Յ Թ — Ն Ե Ր Կ Ա Յ Ա Ց Ո Ւ Մ Մ Ա Ր Ս Է Յ Լ

*Վասպուրականի Հայր. Միութեան կողմէ, Վասպուրականի հերոսամարտի 15ամեակին առթիւ, վաղը կիրակի իրիկուն ժամը 8ին,* 84 Rue Chape, Salon Chape*ի մէջ:*

## ԵՐԵԿՈՅԹ — ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Շ. Գարահիսարի եւ շրջանի Ռազմիկ Հայրենակցական միութեան կողմէ 17 Մայիս Շաբաթ իրիկուն ժամը 8.30էն մինչեւ առաւօտ Պուա-Քոլոնպի Salle Municipaleի մէջ (Rue des Halles):

կը խնդրուի նկատի ունենալ այդ թուականը:

**ԵՐԵԿՈՅԹ** Պարուհի Օր. Ալիս Գավուքճեանի 20 Մայիս երեքշաբթի իրիկուն ժամը 9ին Salle d'Iénaի մէջ:

## Հ. Յ. Դ.

*Փ Ա Ր Ի Զ*

ԻՍԻ-ԼԷ-ՄՈՒԼԻՆՕԻ եւ Պլյեանքուրի Զաւարեան ենթակոմիտէի ժողովը վաղը կիրակի առաւօտ ժամը 9ին ծանօթ հաւաքատեղին: Կը խօսին՝ ընկերներ Բենօ եւ Վահան Համբարձումեան: Նիւթ՝ Վանի հերոսամարտը եւ կամաւորական բանակը:

*Գ Ա Ւ Ա Ռ*

ՄԱՐՍԷՅԼԻ Իշխան ենթակոմիտէն ժողովի կը հրաւիրէ Արամ, Եփրեմ Խան, Աղբիւր Սերոբ, Համազասպ եւ Վարդգէս խումբերը վաղը կիրակի ժամը 2.30ին սովորական հաւաքատեղին:

ԱԼՖՈՐՎԻԼԻ Սարգիս Մինասեան ենթակոմիտէն արտակարգ ժողովի կը հրաւիրէ իր ընկերները վաղը կիրակի ժամը 2.30ին 29 Bld. Carnot:

*Հայր. միութեան ընդհ. ժողովը վաղը կիրակի ժամը 1.30ին Պառ Մոնիւմանթալի սրահը: Անդամ եւ ոչ անդամ հայրենակիցներէ կը խնդրուի անպայման ներկայ գտնուիլ:*

Ա. Ե. Հ. Կ. Խաչի Լիոնի մասնաճիւղի վարչութիւնը ժողովի կը հրաւիրէ, իր բոլոր անդամուհիները վաղը կիրակի կէսօրէ վերջ ժամը 2ին 144 Rue Créqui Տիկին Տէօքմէճեանի բնակարանը:

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

Լիոնի կիւրինի Հայր. Միութեան ընդհ. տարեկան ժողովը՝ վաղը կիրակի ժամը 2ին Շահպազեանի բնակարանը 153 Rue Corneille, Օրակարգ՝ վարչութիւն ընտրութիւն եւ հաշուետուութիւն, ներկաներու թիւը մեծամասնութիւն կը համարուի:

*ՄԱՐՍԷՅԼԻ Բարձր Հայքի*

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Մեր խորին շնորհակալութիւնը կը յայտնենք բոլոր անոնց, որոնք անձամբ, նամակով, հեռագրով եւ ծաղկեպսակներով մխիթարեցին մեզ՝ ԱԲԳԱՐ ՓԻԼՕՅԵԱՆԻ (Ատանացի) մահուան առթիւ:

Մասնաւոր շնորհակալութիւն Թեմիս առաջնորդ Գերաշնորհ Տէր Գրիգորիս եպիսկ. Պալաքեանի որ նախագահելով թաղման արարողութեան հոգեշունչ դամբանական մը խօսեցաւ:

Նոյնպէս շնորհակալութիւն տեղւոյս Թաղական խորհուրդին, որ ծաղկեպսակով իր յարգանքի բաժինը բերած էր:

Սգակիրներ՝ Այրի Տիկին Թագուհի Փիլօյեան եւ զաւակունք, Տէր եւ Տիկին Վահան Փիլօյեան, Տրդատ Փիլօյեան, Տէր եւ Տիկին Խաչիկ Յովհաննէսեան:



### ՊԱՇՏՕՆԱԿԱՆ ԱԶԴ ՄԱՐՍԷՅԼԻ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ

ՄԱՐՍԷՅԼ.— Համաձայն Մարսէյլի Թեմական երեսփ. ժողովի որոշման, երեսփոխանական նոր ընտրութեանց առթիւ համագործակցութիւն ստեղծելու համար կազմուած մարմինը, խորհրդակցական ժողովի հրաւիրած է ծանօթ չէզոք տասը հայրենակիցներ եւ քաղաքական կուսակցութիւններէն ալ' երկ-երկու ներկայացուցիչներ:

Ժողովը տեղի պիտի ունենայ այսօր Շաբաթ ժամը 3ին առաջնորդարանին մէջ




EMPIRE միւզիք-հոլ՝ 37 Av. Wagram

IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H. STEPHAN

# Հ. Մ. Ը. Մ.

## ՍԿԱՈՒՏԱԿԱՆ ՄԵԾ ՑԵՐԵԿՈՅԹ

*1 Յունիս կիրակի ժամը 2.30ին Petit Journal-ի սրահներուն մէջ*

## ԲՈԼՈՐՈՎԻՆ ԻՆՔՆԱՏԻՊ ՑԵՐԵԿՈՅԹ ՄԸ

*Հայոց հին մեհենական շրջանէ պատկերներ աղջիկ սկաուտներու եւ սկաուտներու կողմէ, ներկայացումներ, «սկաուտական բանակում մը Հայաստանի մէջ», չափական (ըիթմիք) պարեր եւ մարզանքներ. Նուագախումբ եւ մեներգ: Կը մասնակցին Հ. Մ. Ը. Մ.-ի եւ «Սիփան»-ի երգչախումբերը ղեկավարութեամբ Պ. Սաքօ Յակոբեանի:*

*Գործողութիւնները տեղի կ'ունենան գունաւոր լուսարձակներով, հարիւրէ աւելի սկաուտներ բեմի վրայ եւայլն:*

*ՀՐԱՒԻՐՈՒԱԾ ԵՆ ՀԱՅ ԵՒ ՕՏԱՐ ԱՆՁՆԱՒՈՐՈՒԹԻՒՆՆԵՐ*

*Հագուստները հայթայթուած են ֆրանսական մեծ տունէ մը: Մուտք 5 ֆրանք:*




IMPRIMERIE - **MASSIS** - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H. STEPHAN






1 ՅՈՒՆԻՍ, ԿԻՐԱԿԻ ՕՐ, ՑԵՐԵԿ ԵՒ ԻՐԻԿՈՒՆ, ALBERT I[er] ԹԱՏՐՈՆԸ

64 Rue du Rocher, Gare St. Lazare

ՑԵՐԵԿՈՅԹ ԺԱՄԸ 3.30ԻՆ — **ԼԵՊԼԵՊԻՃԻ ՀՈՐՀՈՐ ԱՂԱ** — ԵՐԵԿՈՅԹ ԺԱՄԸ 9ԻՆ

*ՑԵՐԵԿՈՅԹԻՆ գիները ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ են՝ արուարձաններէն գալիք ժողովրդին դիւրութեան համար.— Օթեակներ՝ 200, 150 (6 հոգինոց) և 100 ֆր. (4 հոգինոց). Թիկնաթոռներ՝ 20, 15 և 10 ֆր.:*

*ԵՐԵԿՈՅԹԻՆ գիները.— Օթեակները՝ 300, 250 (6 հոգինոց) և 200 (4 հոգինոց) ֆր.: Թիկնաթոռներ՝ 50, 30, 20 և 15 ֆրանք:*

*ԾԱՆՕԹ.— Ցերեկոյթին եւ երեկոյթին տոմսերը կը ծախուին Կավռօշին մօտ եւ Հայկական ճաշարաններըը:*

### Ա. ԱՀԱՐՈՆԵԱՆԻ ՅՈԲԵԼԵԱՆԸ ԼԻՈՆԻ ՄԷՋ

*25 Մայիս կիրակի կէս օրէ վերջ ժամը 2ին*

պետ. սրահներէն Salle Rameau-ի մէջ (29-31 rue de la Martinière)

Հովանաւորութեամբ նախկին վարչապետ եւ Լիոնի քաղաքապետ պ. EDOUARD HERRIOT-ի եւ նախագահութեամբ պ. Ս. ՓԱՓԱԶԵԱՆԻ: Կը խօսի՝ Մ. ՎԱՐԱՆԴԵԱՆ:

ՀՐԱՊԱՐԱԿ ԵԼԱՒ

## ՊՈԼՇԵՒԻԶՄԸ ԵՒ ԸՆԿԵՐՎԱՐՈՒԹԻՒՆԸ

Հեղինակ՝ ԼԷՕՆ ՊԼՈՒՄ

Հրատարակութիւն Հ. Յ. Դ. Եւրոպայի կեդր. կոմիտէին

գին՝ 2 ֆր. 50: փոստի ծախքով միասին 3 ֆրանք

Ստանալու համար դիմել «Յառաջ»-ի եւ կուսակցական տեղական մարմիններուն:

## Հ. Յ. Դ.

ԱՆԻԷՌ - ՊՈՒԱ - ՔՈԼՈՆՊԻ ՉԷՅԹուն կոմիտէի ժողովը՝ վաղը երեկոյ ժամը 8.30ին 79 Rue des Chambards: Ներկայութիւն պարտաւորիչ: Ներկայանալ անդամատետրով:








## ՆՈԹԱՆԵՐ

Արշին Մալ ալանի եւ շատ մը ուրիշ երգերու սոյն նօթաները պատրաստուած փրոֆ. Մոսկոֆեանի կողմէ շատ մաքուր եւ շքեղ:

Դաշնակի բաժին՝ գին 2.50 տոլար, Արշին Մալ ալան, ջութակի բաժին գին 1.50 տոլար: փունջ երգեր՝ դաշնակի բաժին 3 տոլար, 50 երգ մէկ գիրք, փունջ երգեր՝ ջութակի բաժին 2 տոլար, 50 երգ մէկ գիրք: Դիմել՝ H. Mamasian-ի, 137½ East 27th St., New York, U. S. A.









⁂ Պ. Փաթէլ, հնդիկ սահմանադիր ժողովին հրաժարեալ նախագահը, նոր ճառ մը խօսելով Անգլիոյ դէմ, յայտարարեց.

— կառավարութեան ձեռք առած միջոցները հաւասար են անհուսարսափի քաղաքականութեան մը: Մեծն Բրիտանիան այլեւս չիշխեր Հնդկաստանի մէջ: Հնդիկ ազգայնականները Բրիտանացիներուն տեղը անցած են, եւ, ինչ որ ալ ըլլայ, մենք պիտի յաջողինք հաստատել մեր անկախութիւնը, զինուորական ներկայ վարչաձեւին տեղ:

⁂ Հարաւային Հնդկաստանի առեւտրական սենեակը հեռագիր մը ուղղելով կառավարութեան, բողոքեց զսպողական քաղաքականութեան դէմ:

## Չիչէրին կ'անհատէ

«Ռուլ», Պերլինի ռուս պահպանողականներուն թերթը, կը գրէ թէ Չիչէրին վճռապէս մերժած է վերստանձնել արտաքին գործավարութիւնը: Զրոյց կը պտտի թէ Լիթվինոֆ ալ պիտի հեռանայ:

⁂ Փարիզի խորհրդային դեսպանատունը կը հերքէ Փարիզի թերթերուն այն լուրը թէ խորհրդային դեսպանատան պաշտօնեաներէն 8 հոգի ետ կանչուած են, «զեղծումներու» մասին հաշիւ տալու համար:

## «Հարա-քիր»ն կը փրկէ

Թօքիօէն կը հեռագրեն թէ «հարա-քիր»ի ընելով (փորը ճեղքելով) անձնասպան եղաւ ծովային սպայակոյտի անդամներէն Քազուքարի, իր երկրին համար վնասակար գտնելով Լոնտոնի նաւային պայմանագիրը: Միւս կողմէ, ճափոնցի հայրենասէր մը Թուղթի մէջ փաթթուած դանակ մը ղրկեց ծովակալ Թաքարապէի, որպէս զի «հարա-քիրի» ընէ, իբրեւ պատասխանատու այդ պայմանագրին: Ուրիշ խօսքով՝ իբրեւ դաւաճան հայրենիքի . . . :

## Կացութիւնը Պաղեստինի մէջ

Երուսաղէմէն կը հեռագրեն.— Պաշտօնական զեկոյց մը հրատարակուեցաւ Լոնտոնի մէջ կատարուած անգլեւարաբական բանակցութեանց մասին: Զեկոյցը կ'ըսէ թէ Արաբներու պահանջները անընդունելի էին, որովհետեւ այնպիսի սահմանադրական փոփոխութիւններ կը հարկադրէին որ անկարելի պիտի դառնար հոգատարութեան գործադրութիւնը: Զեկոյցը կ'աւելցնէ թէ բրիտանական կառավարութիւնը կը ջանայ ապահովել Պաղեստինի ոչ-հրեայ բնակչութեանց շահերը, թէ միջոցներ կ'ուսումնասիրէ հողագործական համայնքներու պաշտպանութեան համար եւ թէ որոշած է խստօրէն խափանել երկիւղալի լուրերը, որոնք վտանգուած կը ցուցնեն արաբական շահերը:

## Նոր յաւելում – 1,739,000 անգործ

Վերջին շաբթուան տեղեկագիրը 27,000ի յաւելում կը ցուցնէ Անգլիոյ գործազուրկներու թիւին վրայ: Համագումար 1,739,000 հոգի, ինչ որ ոչ միայն լուրջ մտահոգութիւն կը պատճառէ աշխատաւորական կառավարութեան, այլեւ կը սպառնայ պառակտում յառաջ բերել անոր ծոցին մէջ: Արդէն իր հրաժարականը պատրաստած է Սըր Օ. Մօսլի, լորտ Քըրզընի փեսան, որ պատուակալ պաշտօն մը ունի դահլիճին մէջ: Այս երիտասարդը խստօրէն կը դատապարտէ ձեռքերը ծալլած նստելու քաղաքականութիւնը եւ կը պահանջէ միջոցներ ձեռք առնել գործազրկութեան դէմ: Ծրագիր մըն ալ մշակած էր, բայց կառավարութիւնը մերժեց, իբրեւ անգործնական, եթէ ոչ ցնորական: Եթէ պնդէ հրաժարականին վրայ, գէշ կացութիւն մը պիտի ստեղծուի դահլիճին համար, քանի որ պիտի անցնի երիտասարդ երեսփոխաններու խումբի մը գլուխը: Մեծապէս խախտած է գործազրկութեան նախարար Պ. Թոմասի դիրքը: Առջի օր, իբրեւ պարսաւանք, Երեսփ. ժողովին մէջ առաջարկուեցաւ հարիւր ոսկի կրճատել թոշակէն, եւ հազիւ կարելի եղաւ 15 քուէի առաւելութեամբ մերժել բանաձեւը:

Կառավարութիւնը կը խոստովանի թէ չի կրնար ո'րեւէ արմատական միջոց գտնել գործազրկութեան դէմ՝ ներկայ կարգուսարքին մէջ:



## Հ. Յ. Դ.

ՓԱՐԻԶ

ՊԷԼՎԻԼԻ Ռոստոմ ենթակոմիտէի ժողովրդավարական երեկոյթ իրիկուն ժամը 9ին 131 Fbg. du Temple: Օրակարգ՝ զեկոյց երեկոյթ պարահանդէսի եւ ընթացիկ հարցեր:

ՍԷՆ ՄԻՇԷԼԻ Քրիստափոր խումբի ժողովը՝ այս երեքշաբթի իրիկուն ժամը 8.30ին սովորական հաւաքատեղին: Կարեւոր օրակարգ: Պարտաւորիչ ներկայութիւն:

ԳԱՒԱՌ

ԼԻՈՆԻ Պատ. Միութեան ընդհ. ժողովը՝ այսօր հինգշաբթի իրիկուն ժամը 8.30ին, Դրադարանի սրահը: Կարեւոր օրակարգ: Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է:

ՄԱՐՍԷՅԼԻ Ռոստոմ ենթակոմիտէի ընդհ. ժողովը վաղը Ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին: Կարեւոր օրակարգ: Պարտաւորիչ ներկայութիւն:

ՎԻԷՆԻ Քրիստափոր խումբի բոլոր ընկերները ժողովի կը հրաւիրուին վաղը Ուրբաթ իրիկուն ժամը 7ին, Հ. Յ. Դ. Ակումբին մէջ: Կարեւոր օրակարգ: Պարտաւորիչ ներկայութիւն:

ՄԱՐՍԷՅԼԻ Վռամեան ենթակոմիտէի դասախօսական ժողովը այս Կիրակի ժամը 2ին ծանօթ հաւաքատեղին: Կը դասախօսէ՝ Ընկ. Պ. Հիւսեան:



## "ՄԱՅԻՍ 28,, ԿԸ ՏՕՆՈՒԻ ՄԱՅԻՍ 28ԻՆ

ՓԱՐԻԶ.—ԴՇ. ԻՐԻԿՈՒՆ ԺԱՄԸ 8.30ԷՆ ՄԻՆՉԵՒ ԿԷՍ ԳԻՇԵՐ ՓԸԹԻ ԺՈՒՌՆԱԼԻ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ

ԱՆԻԷՌ-ՊՈՒԱ-ՔՈԼՈՆՊ.— Նախաձեռնութեամբ Անիէռ-Պուա-Քոլոնպի Հ. Յ. Դ. Չէյթուն ենթակոմիտէի եւ Հ.Մ.Ը.Մ.ի մասնաճիւղին: Այս կիրակի կէսօրէ վերջ ժամը 2.30ին Պուա-Քոլոնպի Քաղաքապետարանի սրահը Rue des Halles, Bois-Colombes.

Կը նախագահէ՝ Ընկ. Ա. ՋԱՄԱԼԵԱՆ

Բանախօսութիւն եւ գեղարուեստական բաժին

## Ա. ԱՀԱՐՈՆԵԱՆԻ ՅՈԲԵԼԵԱՆԸ ԼԻՈՆԻ ՄԷՋ

25 Մայիս կիրակի կէս օրէ վերջ ժամը 2ին

պետ. սրահներէն Salle Rameauի մէջ (29-31 rue de la Martinière)

Հովանաւորութեամբ Նախկին վարչապետ եւ Լիոնի քաղաքապետ Պ. EDOUARD HERRIOTի եւ նախագահութեամբ Պ. Ս. ՓԱՓԱԶԵԱՆԻ: կը խօսին՝ Պ. Մ. ՎԱՐԱՆԴԵԱՆ (հայերէն և ֆրանսերէն) և Պ. ՄԵՍՐՈՊ ԳՈՒՅՈՒՄՃԵԱՆ:

Գեղարուեստական բաժնին կը մասնակցին Տիկ. J. Bériel (դաշնակ), Փարիզէն Օր. Հ. Թորոսեան (երգ), պիտի երգեն նաեւ Տիկին Սօնա Ղարիբ եւ Օր. Ժ. Տէր Պետրոսեան: Կը նուագեն Փափազեան քոյր-եղբայրներ (դաշնակ-ջութակ): Դասական պարեր պիտի պարեն Եւրոպայի ամենափոքրիկ եհռչակաւոր պարուհիներ Nelly, André Bériel քոյրեր:

Ֆրանսական ընտիր նուագախումբ, հայկական երգչախումբ ղեկավարութեամբ Պ. Ա. Գ. Մելքոնեանի:

## ԵՐԵԿՈՅԹ — ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

կազմակերպուած Իսի-լէ-Մուլինոյի «Եփրատ» նուագախումբի կողմէ, 24 Մայիս Շաբաթ իրիկուն ժամը 8.30էն մինչեւ առաւօտ, Harolaի սրահներուն մէջ 3rue La Vieuville, Nord Sud: Abbesses.

Նախագահութեամբ Պ. Վ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄԵԱՆԻ

կը ներկայացուի «Ռոստոմ» Թատերասիրացի կողմէ

ԾՈՎԻ ՋՈՀԵՐԸ եւ ՎԻՌԻ ՃԱՇԱՐԱՆԻ ՍՊԱՍԱՒՈՐԸ (զաւեշտ)

Հայկ. եւ եւրոպական պարեր: Պարի մրցում, անակնկալներ ընտիր ժազպանտ, ճոխ պիւֆէ ժողովրդական գիներով:

Մուտք՝ այրերու 7.50 ֆր., կանանց 5 ֆր.:



IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS

208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H. STEPHAN

## "ՄԱՅԻՍ 28,, ԿԸ ՏՕՆՈՒԻ

ԱՅՍ ԻՐԻԿՈՒՆ ԺԱՄԸ 8.30ԷՆ ՄԻՆՉԵՒ ԿԷՍ ԳԻՇԵՐ

*ՓԸԹԻ ԺՈՒՌՆԱԼԻ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ*

կը նախագահէ՝ Ա. ԽԱՏԻՍԵԱՆ

կը խօսին՝ Ա. ՋԱՄԱԼԵԱՆ եւ Կ. ՍԱՍՈՒՆԻ

*կը մասնակցին՝ Հ. Մ. Ը. Մ-ի սկաուտները եւ ֆրանսահայ արիները, Սիփան երգչախումբը՝ ղեկավարութեամբ Սաքօ Յակոբեանի, Օր. Ա. Առաքելեան եւ Պ. Մէհտէրեան (երգ):*

*Գեղարուեստական բաժին* *Մուտքը ազատ է*

---

*Պ Ի Յ Ե Ա Ն Ք Ո Ւ Ռ .— Հ. Յ. Դ. Վռամեան ենթակոմիտէի կողմէ: Այս կիրակի ժամը 2ին,* 13 Rue d'Issy

*կը նախագահէ Թ. ՄԵԾԱՏՈՒՐԵԱՆ*

*կը խօսի՝ ԼԵՒՈՆ ՆԱՅԻՐՑԻ*

---

ՄԱՐՍԷՅԼ

*Այս Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին*

Brébant Marseillaisի մեծ սրահը, 146 Chemin des Chartreux.

*Արտասանութիւններ, նուագ եւ երգ*

*Մանրամասնութիւնները տեղւոյն վրայ*

---

*Ռ Ո Ա Ն .— Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Ակնունի խումբի, վաղը Հինգշաբթի ժամը 2ին:*

*կը խօսի՝ Ընկ. ՄԿՐՏԻՉ ԵՐԻՑԱՆՑ*

---

### Ա. Ե. Հ. Կ. ԽԱՉԻ ՓԱՐԻԶԻ ՄԱՍՆԱՃԻՒՂ

*Վաղը Հինգշաբթի ՀԱՄԲԱՐՁՄԱՆ ՏՕՆԻ առթիւ*

*Հ. Հ. Պատուիրակութեան շէնքին մէջ* (71 Ave. Kléber)

ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԱԾ Է ՎԻՃԱԿԻ ՕՐ

*Աւանդական սովորութեամբ վիճակ հանելու հետ միասին բանախօսութիւն, երգեր, պարեր եւ հաճելի ժամանց: Ճոխ եւ մատչելի պիւֆէ:*

*կը նախագահէ՝ Պ. Ա. ՋԱՄԱԼԵԱՆ*

*Մուտքը ազատ է բոլորի համար* *Սկիզբը ժամը 3ին*

---

## ԹԷՅԱՍԵՂԱՆ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Ի ՊԱՏԻՒ ԱՒԵՏԻՍ ԱՀԱՐՈՆԵԱՆԻ

*Հովանաւորութեամբ Գ.Ր. ԵՊԻՍԿ. ՊԱԼԱՔԵԱՆԻ*

*Նախագահութեամբ Պ. ԼԵՒՈՆ ԲԱՇԱԼԵԱՆԻ*

*Վաղը Հինգշաբթի կէսօրէ վերջ ժամը 3ին,* 365 Ave. de Prado (La Plage)*ի մեծ սրահին մէջ:*

*Գեղարուեստական բաժնին կը մասնակցին դերասանուհի Տիկ.ներ* Սուրաբեան, Տիկ. Մարութեան, Պ. Պ. Ս. Սուրաբեան, Մ. Մարութեան, Յ. Ղազարեան *եւ ուրիշներ:*

*ԾԱՆՕԹ.— Թէյասեղանին մասնակցելու համար տոմսերը կարելի է ստանալ մինչեւ Հինգշաբթի կէսօր Պ. Վ. Ղազարեանէ,* Traverse du Mont Piété (Hôtel Damas), *Պ. Գ. Շահլամեանէ* 15 rue Longue des Capucins, *Պ. Պերճ Թաշճեանէ,* 23 rue Des Dominicaines, *Պ. Բ. Մելտոնեանէ,* 90 rue Stanislas Torrents, *(առաջնորդարան):*

---

*ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ ԼԻՈՆԻ ՄԷՋ*

*կազմակերպուած Ա. Ե. Հ. Խաչի Լիոնի մասնաճիւղին կողմէ 29 Մայիս Հինգշաբթի ժամը 2ին Լիոնի ամենաշքեղ սրահներէն Սինէմա «Հօրլօժ»ի մէջ:*

ղեկավարութեամբ ճանրածանօթ դերասան Ա. ՇԱՀԽԱԹՈՒՆԻԻ

կը ներկայացուի՝ «ԴԵՐԱՍԱՆ ՔԻՆԸ»

---

ՀՐԱՊԱՐԱԿ ԵԼԱՒ

## ՊՈԼՇԵՒԻԶՄԸ ԵՒ ԸՆԿԵՐՎԱՐՈՒԹԻՒՆԸ

Հեղինակ՝ ԼԷՈՆ ՊԼՈՒՄ

Հրատարակութիւն Հ. Յ. Դ. Եւրոպայի կեդր. կոմիտէին

գին՝ 2 ֆր. 50: փոստի ծախքով միասին 3 ֆրանք

Ստանալու համար դիմել «Յառաջ»ի եւ կուսակցական տեղական մարմիններուն:

---

## Հ. Յ. Դ.

*Փ Ա Ր Ի Զ*

Պէլվիլի Ռոստոմ ենթակոմիտէի ժողովը՝ այս Ուր. իրիկուն ժամը 8.30ին Ռոստոմի սրահը, ներկայանալ անդամատետրով:

*Գ Ա Ւ Ա Ռ*

*ԼԻՈՆԻ Պատ. միութեան դաստիարակչական ժողովը վաղը Հինգշաբթի իրիկուն ժամը 8.30ին, Գրադարանի սրահը: Կը խօսի Ընկ. Ազարեան: Նիւթ՝ շարունակութիւն նախորդ նախադասութեան: Կը հրաւիրուին ընկերներն ու համակիրները:*

*ԼԻՈՆԻ Կայծակ խումբի ընկերական ժողովը՝ այսօր Չորեքշաբթի իրիկուն ժամը 8.30ին Գրադարանի սրահը.*

*ՄԱՐՍԷՅԼԻ Ռոստոմ ենթակոմիտէին ժողովի կը հրաւիրէ, Զարդարեան, Քրիս, Քեռի, Գէորգ Չաւուշ եւ Արմէն Գարօ խումբերու ընկերները այսօր Չորեքշաբթի ժամը 8ին, սովորական հաւաքատեղին:*

---

Տէր կարապետ քհնյ. եւ երիցուհի Երեւանեան, Տէր եւ Տիկին Վահան Քիւրքճեան, Տէր եւ Տիկ. Երուանդ Կիրակոսեան, Տէր եւ Տիկ. Երուանդ Տ. Մեսրոպեան, Պ. Պ. Պետրոս եւ Արմենակ Երեւանեան, Տէր եւ Տիկ. Միսաք Երեւանեան, Տէր եւ Տիկ. Յակոբ Երեւանեան, Տէր եւ Տիկ. Յովսէփ Սարաֆեան, Տէր եւ Տիկին Հաճի Պօղոսեան, Տէր եւ Տիկ. Մելքի Պէրպէրեան, Տէր եւ Տիկ. Գ. Այվազեան, Պ. Սարգիս Այվազեան իրենց խորին շնորհակալութիւնը կը յայտնեն ամէն անոնց, որոնք անձամբ, հեռագրով եւ կամ նամակով ցաւակցութիւն յայտնեցին, իրենց որդւոյն, եղբօր, աներորդւոյն, եղբօրորդւոյն եւ քեռորդւոյն

ԱԲՐԱՀԱՄ ԵՐԵՒԱՆԵԱՆԻ

դառնաղէտ մահուան առթիւ որ տեղի ունեցաւ 16 Մայիս Ուրբաթ առաւօտ ժամը 8ին 23 տարեկան ծաղիկ հասակին մէջ:

---

**Վարձու է** մեծ արհեստանոց մը որ ունի նաեւ մէկ սենեակ եւ խոհանոց: Ջուր, ելեկտրականութիւն: Արհեստանոցը կարելի է վերածել բնակութեան յարմար երկու սենեակներու: վարձք՝ տարեկան 5500 ֆր. շարժ 250 ֆր.: Մէջը գտնուած կարասիները գնելը պայման է: դիմել՝ առաւօտները մինչեւ ժամը 10, երեկոները 7—10 Պ. Քէպապճեանի, 37 rue Archereau, փարիզ (19), մեթրօ՝ Crimée.

---

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ԴՊՐՈՑԱՍԷՐԻ Սանուց Միութեան տարեկան դաշտահանդէսը տեղի պիտի ունենայ Յուլիս 20ին, կիրակի, Վարժարանի պարտէզին մէջ: կը խնդրուի նկատի ունենալ այդ թուականը:

---

## Հ. Մ. Ը. Մ.

## ՍԿԱՈՒՏԱԿԱՆ ՄԵԾ ՑԵՐԵԿՈՅԹ

*1 Յունիս կիրակի ժամը 2.30ին* Petit Journal*ի սրահներուն մէջ*

### ԲՈԼՈՐՈՎԻՆ ԻՆՔՆԱՏԻՊ ՑԵՐԵԿՈՅԹ ՄԸ

*Հայոց հին մեհենական շրջանէ պատկերներ աղջիկ սկաուտներու եւ սկաուտներու կողմէ, ներկայացումներ, «սկաուտական բանակում մը Հայաստանի մէջ», չափական (ռիթմիք) պարեր եւ մարզանքներ. Նուագախումբ եւ մեներգ: կը մասնակցին Հ. Մ. Ը. Մ.ի եւ «Սիփան»ի երգչախումբերը ղեկավարութեամբ Պ. Սաքօ Յակոբեանի:*

*Գործողութիւնները տեղի կ'ունենան գունաւոր լուսարձակներով, ԵՐԿՈՒ ՀԱՐԻՒՐ սկաուտներ կը մասնակցին հանդէսին:*

*ՀՐԱՒԻՐՈՒԱԾ ԵՆ ՀԱՅ ԵՒ ՕՏԱՐ ԱՆՁՆԱՒՈՐՈՒԹԻՒՆՆԵՐ*

*Հագուստները հայթայթուած են ֆրանսական մեծ տունէ մը: Մուտք 5 ֆրանք:*

---

**Théâtre ALBERT Ier, 64 Rue du Rocher** (Métro : Saint Lazare)

*1 յունիս 1930 կիրակի ցերեկ ժամը 3,30ին և իրիկունը՝ ժամը 9ին*

# LEBLEBIDJI HORHOR AGHA

ՏԻԳՐԱՆ ՉՈՒՀԱՃԵԱՆ ի եւ Ա. ՆԱԼԵԱՆԻ անմահ օբէրէթը 3 արար՝ ամբողջութեամբ: Գեղեցիկ եւ մեծ ՕՐՔԷՍԹՐԸ՝ ղեկավարութեամբ Պ. Շահ-Պարոնեանի

*«Լեպլեպիճի»ի բոլոր եղանակները ամբողջութեամբ ո՛չ մէկ եղանակ զեղչուած է*

*20 հոգիէ բաղկացած երգչախումբ 40 հոգի բեմի վրայ*

Մասնակցութեամբ՝ պ.պ. Վահրամ Սվաճեանի, Ա. Գմբէթեանի, Վահրամ Պալգճեանի, Արմենակ Սարաֆեանի, Սարիմ Մագսուտի, Ե. Գրիգորեանի եւ Տիկիններ Սիրանոյշ Ալիքսանեանի, Մարկրիթ Փափազեանի Ժօժէնի Շահ-Պարոնեանի, եւն., եւն., եւն.:

ՑԵՐԵԿՈՅԹԻ ԳԻՆԵՐԸ — տոմսերը կը ծախուին կավռօշի մօտ եւ հայ ճաշարանները — ԵՐԵԿՈՅԹԻ ԳԻՆԵՐԸ

*Օթեակներ՝ 200, 150 եւ 100 ֆր.: Աթոռներ՝ 20, 15 և 10 ֆր.:* *Օթեակներ՝ 300, 250 և 200 ֆր.: Աթոռներ՝ 50, 30, 20 և 15 ֆր.*

---




IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H. STEPHAN











մին։ Զոհերու թիւը կարելի չէ եղած ճշդել ոչ Հնդիկներուն,ոչ ալ Պիրմաններուն համար։ Ընտանիքներ կան որոնց բոլոր անդամները սպաննուած կամ անհետ կերպով յօշոտուած են։Կառավարական զեկոյց մը կը խոստովանի թէ անկարելի է համրել զոհերը։ Միայն սաչափը գիտեն թէ Եւրոպացիներ չկան զոհերուն մէջ (մնացածը որո՞ւ հոգ...)։ Միայն հիւանդանոցներու մէջ մեռած զոհերուն թիւն է 63, իսկ դարմանուած վիրաւորներուն թիւը՝ 716։ Վաճառատուները փակ են տակաւին եւ ուտելիքի նեղութիւն կը քաշուի։

⁂ Լորտերու ժողովին մէջ, Եգիպտոսի Նախկին մարզպանը նեղացուցիչ հարցումներ ուղղեց կառավարութեան։ Հնդկաստանի Նախորդ փոխարքան պահանջեց որ կառավարութիւնը ամէն միջոց ի գործ դնէ, վերջ տալու համար անհնազանդութեան պայքարին։ Կառավարութեան կողմէ պատասխանեց լորտ Րըսէլ, ըսելով թէ Հնդկաստանի գիւղացի դասակարգերը չեն մասնակցիր պայքարին եւ գովելով բանակին եւ ոստիկանութեան համբերութիւնը։ Յետոյ աւելցուց. «Կառավարութիւնը կը կարծէ թէ մասնաւոր կազմակերպութիւն մը կը վարէ պայքարը. բայց ապացոյց չունի թէ Ռուսիոյ կամ Մոսկուայի մատը կայ այս խռովութեանց մէջ։»

⁂ Առջի օր իսլամներու մեծ ժողով մը տեղի ունեցաւ Պոմպէյի մէջ, օրուան դէպքերուն առթիւ։ Ժողովը բանաձեւ մը քուէարկեց, որ համակրանք կը յայտնէ խռովութեանց զոհերուն համար եւ կը հրաւիրէ իսլամները բռնութեան չդիմել։

## "ՄԱՅԻՍ 28„ ԿԸ ՏՕՆՈՒԻ

*ՊԻՑԵԱՆՔՈՒՌ.* — Հ. Յ. Դ. Զաւարեան ենթակոմիտէի կողմէ։ Այս կիրակի ժամը 2ին, 13 Rue d'Issy

*կը նախագահէ Թ. ՄԵԾԱՏՈՒՐԵԱՆ*

*կը խօսի՝ ԼԵՒՈՆ ՆԱՅԻՐՑԻ*

*կը նուագէ «ԵՓՐԱՏ» նուագախումբը*

### ՄԱՐՍԷՅԼ

*Վաղը Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին*

Brébant Marseillaisի մեծ սրահը, 146 Chemin des Chartreux.

*կը խօսին՝ Պ. Հ. ՍԵՐԷՆԿԻՒԼԵԱՆ եւ ուրիշներ*

*Արտասանութիւններ, նուագ եւ երգ*

*Մանրամասնութիւնները տեղին վրայ*

*ՍԷՆՏ ՄԱՐԿՐԻՏ.* — *Այս կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին։ Յայտագիր տեղւոյն վրայ։*

### Ի ՊԱՏԻՒ Ա. ԱՀԱՐՈՆԵԱՆԻ

*Մարսէյլի Բարձր Հայքի Հայր. եւ Երիտ. միութեանց, կողմէ, Այս կիրակի իրիկուն ժամը 8ին Սալօն Շափի մէջ։ կը նախագահէ՝ Պ. Յ. ՍԱՀԱԹՃԵԱՆ։ կը խօսին՝ Պ. Պ. Ա. ԱԲՈՅԵԱՆ եւ ԱՐԾՆԵԱՆ։ Գեղարուեստական բաժին։ Մուտքը ազատ է։*

**ԳՐԱԿԱՆ ԱԿՈՒՄԲ**, 71 AVE. KLÉBER

*Վաղը Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին։ Կը խօսի Ա. Ջամալեան, Պուլկարահայ գաղութի մասին։*

## Հ. Յ. Դ.

*ՓԱՐԻԶ*

*ՓԱՐԻԶԻ Քրիստափոր խումբի ժողովը այսօր Ուրբաթ իրիկուն, սովորական հաւաքատեղին։*

ՊԷԼՎԻԼԻ Ռոստոմ ենթակոմիտէի ժողովը՝ այսօր Ուր. իրիկուն ժամը 8.30ին Ռոստոմի սրահը։ Ներկայանալ անդամատետրով։

*ԳԱՒԱՌ*

*ԼԻՈՆԻ Կուկունեան խումբի ժողովը՝ այսօր Ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին Գրադարանի սրահը։ Ներկայանալ անդամատետրով։*

*ՄԱՐՍԷՅԼԻ Իշխան ենթակոմիտէն ստիպողաբար ժողովի կը հրաւիրէ Արամ, Աղբիւր Սերոբ, Եփրեմ խան, Համազասպ եւ Վարդգէս խումբերու բոլոր ընկերները այս Կիրակի իրիկուն ժամը 8.30ին, սովորական հաւաքատեղին։ Պարտաւորիչ ներկայութիւն։*

## ՑՈՒՇԱՏԵՏՐ

*Զ. Ե. Ո. Միութեան Անիէռ Պուա-Քոլոնպի մասնաճիւղի ընդհ. ժողովը՝ այսօր Ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին ծանօթ հաւաքատեղին։ Կարեւոր օրակարգ։*

*Զ. Ե. Ո. Միութեան Մարսէյլի մասնաճիւղի վարչութիւնը կարգ մը ընկերներու դիմումներուն վրայ նախաձեռնարկած է կազմելու ենթամասնաճիւղ մը մը Սէն Լուի մէջ այս Կիրակի առաւօտ ժամը 9.30ին, Պ. Փիլոեանի սրճարանի սրահը։ Կը հրաւիրուին բոլոր որբ ընկերները։ Ներկայ կ'ըլլայ Մարսէյլի վարչութիւնը։*

*Շ. ԳԱՐԱՀԻՍԱՐԻ եւ շրջանի Ռազմիկ Հայր. միութեան տարեկան ընդհ. ժողովը այս Կիր. ժամը 2.30ին 40 Րիւ Պէլվիլի սրահը։ Օրակարգ՝ հաշուետուութիւն եւ նոր վարչութեան ընտրութիւն եւայլն։ Կը խնդրուի բոլոր հայրենակիցներէն անպայման ներկայ գտնուիլ սոյն կարեւոր ժողովին։*

Տոքթ. Եր. Գրգոյեան եւ իր փոքրիկները՝ Ժպտիս եւ Արմինէ, Պ. Սմբատ Գրգոյեան եւ իր աղջիկը, այրի տիկ. Ազնիւ Գրգոյեան, Պ. Պ. Հրաչեայ, Հրանդ, Արմէն Ճ. Գրգոյեան (Թիֆլիս), Պ. Վաղինակ Ճ. Գրգոյեան, Տէր եւ Տիկ. Քորքմազեան (Փոթի), Տէր եւ Տիկ. Յ. Յոխիկեան եւ զաւակունք (Սան Ֆրանսիսկօ), Տէր եւ Տիկ. Յ. Ջաղացպանեան, Տէր եւ Տիկ. Ս. Պալճեան, Տէր եւ Տիկ. Խ. Ապլահաթեան եւ զաւակունք, Տէր եւ Տիկ. Ա. Ապլահաթեան, Տէր եւ Տիկ. Վ. Միրիճանեան եւ զաւակը (Երեւան), Պ. Գ. Էքմէքճեան (Մարսէյլ), Այրի Տիկ. Շ. Ինճուճեան, Այրի Տիկ. Մ. Ինճուճեան եւ զաւակունք, Պ. Յ. Ինճուճեան, Տէր եւ Տիկ. Գ. Գասապեան եւ զաւակունք, Տէր եւ Տիկ. Յ. Գասապեան (Ս. Ֆրանսիսկօ), Տէր եւ Տիկ. Լ. Գասապեան եւ զաւակունք (Լօս Անճէլօս), Տէր եւ Տիկ. Գ. Գասապեան (Եկատերինդար), Տէր եւ Տիկ. Գ. Խանամիրեան (Պէյրութ), Տէր եւ Տիկ. Տ. Պլտոյեան եւ զաւակունք (Տէսին), եւ պարագաները խորին վշտով կը ծանուցանեն դառնակսկիծ մահը իրենց սիրեցեալ կնոջ, մօր, եղբօրկնոջ, ներոջ, հօրեղբօրկնոջ, մօրեղբօրկնոջ եւ ազգականուհիին

Բ Ժ Շ Կ Ո Ւ Հ Ի

**ՏԻԿԻՆ ԱՂԱՒՆԻ ԳՐԳՈՅԵԱՆԻ**

(Ծնեալ Տէմիրճեան)

որ զոհ գնաց եղերական արկածի մը 1930 Մայիս 24ին։

Յուղարկաւորութիւնը կը կատարուի վաղը Շաբաթ օր կէսօրէ վերջ ժամը 12.30ին Փարիզի Հայոց եկեղեցիին մէջ, 15 Rue Jean Goujon, ուսկից հանգուցելոյն մարմինը պիտի փոխադրուի Փանթէնի գերեզմանատունը։

ԾԱՆՕԹ.— *Մահազդ չստացողներէն կը խնդրուի ներկայս իբր այն նկատել։*

*ՓԱՐԻԶԻ Հայ բժշկական Միութիւնը ցաւով կը ծանուցանէ դառնաղէտ մահը՝ միութեան ժրաջան անդամուհի ԲԺՇԿՈՒՀԻ ՏԻԿ. ԱՂԱՒՆԻ ԳՐԳՈՅԵԱՆի որ զոհ գնաց ցաւալի արկածի մը։*






IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H. STEPHAN









ՓԱՐԻԶԻ Տիկնանց Միութեան Կ. Խաչի Օգնութեան մասնաճիւղը սրտի խորունկ կսկիծով կը ծանուցանէ դառնակսկիծ մահը Միութեան գործունեայ եւ եռանդուն անդամուհի *ԲԺՇԿՈՒՀԻ ՏԻԿԻՆ ԱՂԱՒՆԻ ԳՐԳՈՅԵԱՆի* որ զոհ գնաց դժբախտ արկածի մը։

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— կը փնտռուի կեսարիոյ իւլնէզ գիւղացի կարապետ Եայլաեան (45 տարեկան) որ ամուսնացած էր կեսարացի Յակոբ Ճօլօլեանի աղջկան Մարիամի հետ եւ ունէր 3 զաւակներ՝ Յովսէփ, Աբրահամ եւ Յովհաննէս։ 16 տարի առաջ զինուոր էր Պոլիս։ Անկէ ի վեր լուր չկայ իր մասին։ Իմացնել Յովսէփ Եայլաեանի, 22 Rue J. J. Rousseau, Arles, (B. du R.) France.

Կը խնդրուի արտասահմանեան թերթերէն արտատպել։ Ճշգրիտ լուր առողին 200 ֆր. նուէր։

— Կը փնտռեմ Քէմախի վերի Բագառիճէն խօսրով Իլպիզեան եւ զաւակները Ղազարոս, Կաթիկ, Ազատուհի, եւ հօրեղբօրորդւոյս զաւակները՝ Աւագ, Մատթէոս եւ Ծաղիկ, որոնք աքսորուած են 1915ին։ Իզմիրի դէպքէն ամիս մը առաջ Մալաթիայէն լուր առնուած է աղջիկը կաթիկէն։ Անկէց ի վեր լուր չկայ։ Իրենց մասին ստոյգ տեղեկութիւն տուողին 500 ֆր. նուէր, իմացնել՝ H. Hougasian, Mazagan: Maroc: կամ «Յառաջ»ի։ Կը խնդրուի սուրիահայ եւ յունահայ թերթերէն արտատպել։

